1

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 24 1948

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—87։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ 26 ՏԱՐԻՆ

*1922 թվի դեկտեմբերի 30-ին Սովետների Համամիութենական առաջին համագումարի պատմական որոշմամբ կազմակերպվեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։ Սովետական Միության ժողովուրդների կամավոր միավորումը մի միասնական պետության մեջ համագումարը ընդունեց Լենինի և Ստալինի առաջարկությամբ։ Հանդես գալով համագումարում ընկեր Ստալինը ասաց՝ «Այսօրվա օրը նոր Ռուսաստանի հաղթանակի օրն է, որը փշրեց ազգային ճնշման շղթաները, կազմակերպեց հաղթանակը կապիտալի դեմ, ստեղծեց պրոլետարիատի դիկտատուրան, արթնացրեց Արևելքի ժողովուրդներին, ոգեշնչում է Արևմուտքի բանվորներին, Կարմիր դրոշը պարտիական դրոշից դարձրեց պետական դրոշ*

և այդ դրոշի շուրջը համախմբեց Սովետական ռեսպուբլիկաների ժողովուրդներին, որպեսզի նրանց միավորի մեկ պետության մեջ, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ, որը ապագա համաշխարհային Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի նախատիպն է» (Ի. Վ. Ստալին, Երկեր, հատոր 5, էջ 177—178, Հայպետհրատ, 1948 թ.)։

Սովետական Միությունը ծնունդ առավ քաղաքացիական կռիվները ավարտելուց հետո պրոլետարիատի դիկտատուրայի զարգացման ու հետագա ամրապնդման պայմաններում, երբ սովետական ժողովուրդը անցավ տնտեսական խնդիրների լուծման, պատերազմի և քաղաքացիական կռիվների հետևանքով քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման գործին, «...երբ սովետական իշխանությունը մտածում է արդեն ոչ միայն գոյության,— ասում է ընկեր Ստալինը,— այլև այն մասին, որ զարգանալով՝ դառնա մի այնպիսի լուրջ միջազգային ուժ, որը կարողանա ազդել միջազգային իրադրության վրա, կարողանա փոխել այն հօգուտ աշխատավորության» (նույն տեղ, էջ 175)։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբ-



լիկաների Միության գոյության 26 տարիները լիովին արդարացրին ստալինյան կանխատեսումները։ Հերոսական աշխատանքի ու պայքարի անցած տարիները արմատական փոփոխություններ մտցրին մեր երկրի կյանքում։ Բոլշևիկների պարտիայի, ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ սովետական մարդիկ հետամնաց երկիրը վերածեցին մեծ սոցիալիստական տերության, միջազգային հզոր ուժի, որը կարողանում է ազդել միջազգային իրադրության վրա, իր բարերար ազդեցությունն է տարածում հօգուտ աշխատավոր ու ճնշված մարդկության, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հաղթանակի։ Սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում ոգեշնչում է բոլոր երկրների բանվորներին, գյուղացիներին և առաջավոր ինտելիգենցիային իմպերիալիստների դեմ նրանց մղած պայքարում, իմպերիալիստներ, որոնք փորձում են խեղդել դեմոկրատիան, խլել աշխատավորների ձեռքից այն նվաճումները, որ նրանք ձեռք են բերել համառ ու երկար պայքարի միջոցով։

ՍՍՌՄ ժողովուրդները միավորվեցին մեկ միասնական միութենական սովետական պետության մեջ կամավորության, իրավահա-

վասարության և բարեկամության գրանիտե
հիմքի վրա, ցարիզմի կողմից ճնշված ժողո-
վուրդների դեպի ռուս մեծ ժողովուրդը տա-
ծած վստահության վրա։ Այդ միավորման
համար ամենից առաջ մենք պարտական ենք
Լենինի-Ստալինի պարտիային, մեր մեծ ա-
ռաջնորդներ Լենինին և Ստալինին, որոնք
սովետական իշխանության առաջին իսկ տա-
րիներից երկիրը տարան դեպի սովետական
բոլոր ժողովուրդների մերձեցումն ու սերտ
համագործակցությունը։ Սովետական Միու-
թյան ստեղծումը լենինյան-ստալինյան ազ-
գային քաղաքականության արդյունքն է,
նրա կենսական ուժի դեմոնստրացիան։

Բուրժուական բազմազգ պետությունները
ստեղծվել են նվաճման, հպատակեցման, ժո-
ղովուրդների բռնի միակցման միջոցով։ Բր-
իտանական կայսրությունը կառուցված է
բազմամիլիոն գաղութային ժողովուրդների
արյան ու ոսկորների վրա։ Անսահելի բռնու-
թյան և զենքի ուժով, տեղական բնակչու-
թյանն անողոք բնաջնջելով, Անգլիան հպա-
տակեցրեց իրեն Հնդկաստանը, Ավստրալիան,
Հարավային Աֆրիկան և մի շարք այլ երկըր-
ներ։

Ամերիկայի Միացյալ Նահանգները բազ-
մաթիվ պատերազմներ են մղել անզեն ահ-



զական հնդկական ցեղերի դեմ և բռնու-
թյամբ հպատակեցնել իրենց։ Միացյալ
Նահանգները Ֆրանսիայից, Իսպանիայից,
Մեքսիկայից զավթում և գնում էին հսկայա-
կան տերիտորիաներ բնակչության հետ միա-
սին և այս ճանապարհներով իրենց տերի-
տորիան մեծացրին ավելի քան տասն ան-
գամ։ Այդ նույն գայլային քաղաքականու-
թյունն են վարում անգլո-ամերիկյան իմպե-
րիալիստները այսօր Չինաստանում, Ինդոնե-
զիայում, Պաղեստինում, Հունաստանում և
ամենուրեք ուր նրանց հաջողվում է ոտք
դնել։ Ընկեր Ստալինն ասում է. «... Ժողո-
վուրդների ոչ մի միություն, ժողովուրդների
ոչ մի միավորում միասնական պետության
մեջ չի կարող հաստատուն լինել, եթե այն
իր հիմքում չունի լիակատար կամավորու-
թյունը, եթե իրենք՝ ժողովուրդները չեն ու-
զում միավորվել» (Ի. Վ. Ստալին, Երկեր,
հատ. 5, էջ 269, Հայպետհրատ)։

Կամավոր կերպով Միության մեջ միավոր-
ված տասնվեց Սովետական Սոցիալիստա-
կան Ռեսպուբլիկաները միանգամայն ազատ
և իրավահավասար են։ Նրանցից յուրա-
քանչյուրը երաշխավորված իրավունք ունի
դուրս գալու ՍՍՌՄ-ի կազմից։ Սովետական
Միության մեջ չկա իշխող, արտոնյալ ազգ և

չկան ենթակա ազգություններ, ինչպես այն Ռուսաստանյան կայսրության մեջ էր, ինչպես դա այժմ բուրժուական բազմազգ պետություններում է։ Յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա անկախ իր ազգաբնակչության քանակից և տերիտորիայի մեծությունից միևնույն իրավունքներով է օգտվում։

Շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության արմատապես փոխվել է ՍՍՌՄ-ի մեջ մտնող ռեսպուբլիկաների պատկերը։ Սովետական երկրի ինդուստրիալիզացիայի բարձր տեմպերի պայմաններում առանձին ռեսպուբլիկաների արդյունաբերությունը աճեց բազմապատիկ արագությամբ։ 1940 թվականին ՍՍՌՄ արդյունաբերությունը 1913 թվականի մակարդակը գերազանցեց 12 անգամ։ Ղազախստանում և Հայաստանում արդյունաբերությունը այդ նույն ժամանակամիջոցում աճեց ավելի քան 22 անգամ, Վրաստանում 26,5 անգամ, Կիրգիզիայում 160 անգամ, Տաջիկստանում 242 անգամ։

Հնգամյակի տարիներին վիթխարի չափով աճեց Ուկրաինայի արդյունաբերությունը։ Բելոռուսիայում ստալինյան հնգամյակների տարիներին կառուցվեցին 1700 նոր ձեռնար-



կություններ։ Ադրբեջանում ստեղծվեցին նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, մի քանի անգամ աճեց նավթի հանույթը։ Ժամանակակից հզոր արդյունաբերություն է ստեղծված Ղազախստանում, ուր կառուցված են գունավոր մետալուրգիայի մեծ ձեռնարկություններ, ստեղծված է ՍՍՌՄ նոր ածխային կենտրոն՝ Կարագանդայի ավազանը։ Սովետական իշխանության տարիներին Ուզբեկստանում կառուցված է մետալուրգիական, մեքենաշինական, քիմիական, սննդի արդյունաբերություն և խոշոր տեքստիլ ֆաբրիկաներ։

Բազմաթիվ գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, հանքահորեր են ստեղծված նաև միութենական մյուս ռեսպուբլիկաներում։ Աճել են տրակտորիստների, ինժեներների, տեխնիկների ազգային կադրեր։

Բոլոր ռեսպուբլիկաներում կոլխոզային կարգի հաղթանակի հետևանքով ստեղծված է առաջավոր սոցիալիստական գյուղատնտեսություն։ Ջրանցքների կառուցումը, ճահիճների չորացումը հնարավորություն տվեց յուրացնելու նոր հողեր և բարձրացնելու հողի բերքատվությունը։ Լայնորեն ծավալվել է ա-

մենաբազմապիսի տեխնիկական կուլտուրաների մշակությունը։

Կուլտուրայի աննախընթաց վերելք են ապրում ՍՍՌՄ ժողովուրդները։ 1914 թվականի համեմատությամբ միջին հաշվով մեր երկրում սովորողների թիվը աճել է ավելի քան չորս անգամ, իսկ Կիրգիզիայում 44 անգամ, Ուզբեկստանում 68 անգամ, Տաջիկիստանում 660 անգամ։

Մեր երկրում 40 ազգությունների համար գիր ու գրականություն ստեղծվեց միայն սովետական իշխանության տարիներին։ Լայնորեն ծավալվել են գրքերի ու թերթերի հրատարակությունները։ Թուրքմենստանում մինչև ռևոլյուցիան չէր հրատարակվում թուրքմեներեն լեզվով և ոչ մի թերթ, իսկ 1947 թվականին հրատարակվում էր 48 թերթ։ Ամենուրեք լայնորեն ծավալված է հիվանդանոցների, ամբուլատորիաների, պոլիկլինիկաների, ծննդատների ցանցը։

Ուկրաինական, Բելոռուսական, Ուզբեկական, Ղազախական, Վրացական, Ադրբեջանական, Լիտվական, Լատվիական, Հայկական, Էստոնական ռեսպուբլիկաներում ստեղծված են գիտությունների ակադեմիաներ։ Կիրգիզական, Տաջիկական, Թուրքմենական ռեսպուբլիկաներում գործում են



ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի բաժանմունքները։

Հայրենական պատերազմի ծանր տարիներին բոլոր ազգությունների սովետական մարդիկ ավելի հաստատուն կերպով դրսևորեցին մեր երկրի ժողովուրդների միասնության անխորտակելի ուժը։ Սովետական ժողովուրդների բարեկամությունը պատերազմի բոցերի մեջ դիմացավ ամենածանր փորձության։ Պաշտպանելով ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամության գաղափարները, Սովետական Միությունը, ահռելի պատերազմից հաղթանակով դուրս եկավ։ Հաղթեց տնտեսության սովետական սոցիալիստական սիստեմը, Սովետական պետությունը, հաղթեցին Սովետական Միության զինված ուժերը։ Գերմանա-ֆաշիստական զավթիչները, որոնք ձգտում էին հաստատել մեկ ազգի տիրապետությունը և հպատակեցնել բոլոր մյուս ազգերին, հիմնովին ջախջախվեցին։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Միության ժողովուրդները բացառիկ հաջողությամբ վերականգնում և զարգացնում են ժողովրդական տնտեսությունը, առաջ են մղում սոցիալիստական կուլտուրան, գիտությունն ու արվեստը, ամ-

րապնդում են սովետական իշխանության տնտեսական և ռազմական հզորությունը։

1948 թվի 9 ամիսներում ՍՍՌՄ արդյունաբերությունը 17 տոկոսով գերազանցեց մինչ-պատերազմյան 1940 թվի մակարդակը։ Մեծագույն հաղթանակներով է նշանավորվում այս տարին գյուղատնտեսության մեջ. հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրանքը հասել է, իսկ բերքատվությունը անցել է 1940 թվականի մակարդակից։

Նկամտաբերության և արտապլանային կուտակումների համար ամբողջ երկրով մեկ ծավալված հայրենասիրական շարժումը ընդգրկել է հազարավոր ձեռնարկություններ և ընդունել համաժողովրդական բնույթ։ Այդ շարժման առջևից են գնում նրա նախաձեռնողները, Մոսկվայի աշխատավորները, որոնք ժամկետից շուտ կատարեցին հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարվա պլանները, տալով մեր երկրին երկու միլիարդ ռուբլու արտապլանային կուտակում։

Նոր, սովետական դարաշրջանի առաջակերի՝ մեր պանծալի մայրաքաղաք Մոսկվայի օրինակով աշխատում ու պայքարում են սովետական բոլոր մարդիկ։



Համաժողովրդական այդ միթխարի շարժման համընթաց քայլում են Հայաստանի աշխատավորները։ Հայաստանի աշխատավորները, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին անձնուրաց կերպով պայքարելով ընկեր Ստալինի կողմից առաջադրված խնդիրների կենսագործման համար, դեկտեմբերի 13-ին կատարեցին 1948 թվի արդյունաբերության պետական պլանը 100 տոկոսով։ 11 ամիս 13 օրում երկրին 16,6 տոկոս ավելի արտադրանք տըվին քան 1947 թվին, իսկ 1940 թվի համեմատությամբ ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը գերազանցեց 47,3 տոկոսով։

Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած միթխարի նվաճումները մեծապես բարելավեցին բանվորների և գյուղացիների նյութական վիճակը։ Դրամական ռեֆորմի հետևանքով սովետական ռուբլու գնողունակության կրկնակի բարձրացումը և միաժամանակ աշխատավարձի դրամական աճը, 1947 թվի համեմատությամբ բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացրեց ավելի քան երկու անգամ։ Այդ նույն համեմատությամբ բարձրանում է նաև գյուղական ազ-

գաբնակչության դրամական եկամուտը։

Այդ բոլոր փաստերը ամբողջ աշխարհի առաջ նորից և նորից ցուցադրեցին սովետական կարգերի անխորտակելի կենսունակությունը, նրա մեծագույն առավելությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սրման հետևանքով կապիտալիստական երկրների էկոնոմիկան գտնվում է անհաշտելի հակասությունների մեջ։ Օր-ավուր աճող գործազրկությունը, արտադրական կարողության խրոնիկական թերբեռնվածությունը նոր տնտեսական ճգնաժամի նախադրյալներըն են հանդիսանում։

Կապիտալիստական երկրներում գների հարատև բարձրացման, դրամի գնողունակության անկման, աշխատավարձի անհամեմատ ցածր մակարդակի հետևանքով գնալով ավելի ու ավելի է վատթարանում աշխատավորության նյութական դրությունը։

Դրա հակառակ, տարեց-տարի բարձրանում է կապիտալիստների եկամուտը։ Այսպես օրինակ, եթե 1939 թվին Ամերիկայի Միացյալ Նահանգների մոնոպոլիստները ստացան 6,4 միլիարդ դոլլար եկամուտ, իսկ պատերազմի թեժ շրջանում տարեկան 24 միլիարդ դոլլար եկամուտ, ապա 1947 թվին



ամերիկյան մոնոպոլիստների եկամուտը հասավ համարյա 30 միլիարդ դոլլարի։

Նոր պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգներին և նրանց լակեյ աջ սոցիալ-դեմոկրատներին չի հաջողվի թող փչել ժողովուրդների աչքերը— ժողովուրդները չեն մոռացել 2-րդ համաշխարհային պատերազմի աղետը։ Հակառակ իմպերիալիստների բոլոր որոգայթներին, ամբողջ աշխարհում աճում և ամրանում են իսկական դեմոկրատական ուժերը, որոնց ավանգարդում գնում է մեր մեծ Հայրենիքը— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

26 տարի ապրում ու հզորանում է Սովետական Միությունը, օրավուր ամրանում է մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը, որը նորանոր հաղթանակներ է բերում մեր մեծ Հայրենիքին։ «...ՍՍՌՄ ժողովուրդների միջև բարեկամությունը,— ասել է ընկեր Ստալինը,— մեծ և լուրջ նվաճում է, որովհետև քանի այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր երկրի ժողովուրդները կլինեն ազատ և անպարտելի։ Ոչ-ոք սարսափելի չէ մեզ համար— ոչ ներքին և ոչ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում է ու բարգավաճում»։

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԿԱՄՊԱՆԻԱ Է

Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 85-րդ հոդվածի և ՍՍՌՄ-ի, միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության օրենքի 22-րդ հոդվածի հիման վրա 1949 թվի փետրվարի 6-ին տեղի են ունենալու ժողովրդական դատարանների (ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների) համաժողովրդական ընտրություններ։ Այդ ընտրությունները կատարվելու են աշխարհի ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի՝ ՍՍՌՄ Ստալինյան Կոնստիտուցիայի հիման վրա։ Դրանք լինելու են ընդհանուր, ուղղակի, հավասար ու գաղտնի քվեարկությամբ։ Այդ նշանակում է, որ մեր ռեսպուբլիկայի յուրաքանչյուր քաղաքացի գաղտնի քվեարկությամբ,



դեմոկրատական ամենալայն հիմունքներով, ընտրելու է իր շրջանի ժողովրդական դատավորին և ժողովրդական ատենակալներին։

Դատարանը մեր երկրում պաշտպանում է ժողովրդի շահերը, կատարում է օրենքներում գրի առնված նրա կամքը։ Դրա համար էլ սովետական մարդիկ ժողովրդական դատարանների ընտրությունները դիտում են որպես պետության կառավարման մեջ ժողովրդի մասնակցության նկատմամբ ստալինյան հոգատարության արտահայտություններից մեկը։ Սովետական յուրաքանչյուր քաղաքացի, մասնակցելով ժողովրդական դատարանների ընտրություններին, կրցուցադրի իր նվիրվածությունը մեր Հայրենիքին, կպաշտպանի Լենինի-Ստալինի պարտիայի քաղաքականությունը, որի նպատակն է է՛լ ավելի ամրապնդել սովետական պետությունը։

Կապիտալիստական երկրներում ժողովուրդը բոլոր միջոցներով հեռու է պահվում երկրի քաղաքական կյանքին որևէ մասնակցություն ունենալուց։ Դատարանը կապիտալիստական երկրներում իմպերիալիստների ձեռքին զենք է ծառայում ժողովրդին ճնշելու և կեղեքելու համար։ Դրա վառ ապացույց կարող է ծառայել ամերիկյան դատա-

րանը, որն ամեն օր բանտ է նստեցնում հարյուրավոր ազնիվ մարդկանց, որոնք համարձակվել են իրենց ձայնը բարձրացնել նոր արյունահեղ պատերազմի նախապատրաստման դեմ։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում դատական պատասխանատվության են կանչվում ԱՄՆ-ի կոմունիստական պարտիայի 12 ղեկավարներ, որոնց միակ «մեղքն» այն է, որ նրանք կոմունիստներ են և անհունորեն նվիրված են ամերիկյան ժողովրդի շահերին։

Իրենց երկրի առաջավոր մարդկանց հետ անողոք դատաստան են տեսնում հունական միապետականների և մյուս իմպերիալիստական երկրների դատարանները։

Կապիտալիստական երկրներում բուն օրենքներն ուղղված են ժողովրդի դեմ. դրանք պաշտպանում են աշխատավորներին շահագործելու իրավունքը և ամեն կերպ կապիտալիստներին օգնում են հսկայական շահույթներ ստանալու։ Լենինը բուրժուական դատարանն անվանել է «շահագործվողներին անողոք կերպով ճնշող, դրամական պարկի շահերը պաշտպանող նուրբ գործիք»։

Սակայն դրանով չի սահմանափակվում կապիտալիստական երկրների դատարանի ռեակցիոն էությունը։ Աստիճանավորների



բազմամարդ բանակը, գրասենյակայնության բյուրոկրատական սիստեմը, բուրժուական դատական ապարատի կամայականությունը և անվերահսկողությունը հասարակ ժողովրդի համար անհնարին են դարձնում օգտվելու թեկուզ և այն պոչատ իրավունքներից, որոնք ձևականորեն գրի են առնված բուրժուական պետությունների օրենքներում։

Լենինը բուրժուական դատական ապարատի մասին գրել է.

«Ամեն մի օրենք, որից թեկուզ մի կաթիլ օգուտ կարող է լինել, միշտ էլ այն աստիճան կաշկանդվում է այդ կանցելյարշչինայով, որ օրենքի կիրառումը անվերջ ձգձգվում է. և այդ դեռ քիչ է. օրենքի կիրառումը թողնվում է չինովնիկների լիակատար հայեցողությանը, որոնք, ինչպես ամեն մեկը գիտե, պատրաստ են հոգով «սպասավորելու» ամեն մի լիքը քսակի և հենց որ հնարավոր լինի, չարիք անել հասարակ ժողովրդի նկատմամբ» (Երկ. հատ. 2, էջ 359, հայ. հրատ.)։

Սովետական երկրում՝ հաղթանակած սոցիալիզմի երկրում դատարանը կատարում է ժողովրդի կամքը, որը գրի է առնված սովետական պետության օրենքներում։ Սովետական դատարանը կանգնած է մեր ժողովրդի

բոլոր նվաճումների պաշտպանության դիրքերում։ Նա սոցիալիստական սեփականությունը, մեր հասարակակարգի հիմքը՝ պաշտպանում է ամեն տեսակ ոտնձգություններից։ Սովետական դատարանը բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի ձեռքում միջոց է հանդիսանում աշխատանքային կարգապահություն ամրապնդելու համար։ Մեր երկրում ժողովրդական դատարանները պաշտպանում են քաղաքացիների կյանքը, գույքը և առողջությունը։ Ժողովրդական դատարանները մեծ դեր են խաղում հիմնարկությունների, ձեռնարկությունների և առանձին քաղաքացիների կողմից սովետական օրենքների ճիշտ և անշեղ կենսագործումն ապահովելու գործում։ Նրանք պայքարում են ամեն տեսակ քաշքշուկի և բյուրոկրատիզմի դեմ։

Սովետական դատարանի նպատակն է ո՛չ միայն պատժել հանցագործներին, այլև ուղղել ու դաստիարակել նրանց։ Խաղաղ շինարարության պայմաններում ժողովրդական դատարանների դերն զգալիորեն աճում է։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ «Ռեպրեսիաները հարձակման անհրաժեշտ տարր են հանդիսանում, բայց օժանդակ, և ո՛չ թե



գլխավոր տարրը» (Ստալին, «Լենինիզմի հարցերը», հայ. հրատ. 10, էջ 497)։

Մեր երկրում բոլոր աշխատավորները լայնորեն օգտվում են այն բոլոր իրավունքներից, որոնք վերապահված են նրանց Ստալինյան Կոնստիտուցիայով։ Ժողովրդական դատարանները մեզ մոտ ընտրովի են։ Ժողովրդական դատավորները և ժողովրդական ատենակալները ընտրվում են ժողովրդի միջից՝ բոլոր աշխատավորների կողմից։ Ընտրելու իրավունքը մեզ մոտ վայելում են ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները, որոնք ընտրության օրը դարձել են 18 տարեկան, անկախ սեռից, ռասայական և ազգային պատկանելիությունից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, բացի նրանցից, որոնք դատարանով զրկված են իրավունքներից կամ խելագար են։ Մյուս միութենական ռեսպուբլիկաների քաղաքացիները Հայկական ՍՍՌ քաղաքացիների հետ համահավասար օգտըվում են ընտրական իրավունքից։

Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների Կանոնադրության հիման վրա ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալ կարող է ըն-

տրվել Հայկական ՍՍՌ յուրաքանչյուր քաղաքացի, որն ընտրական իրավունք ունի և ընտրությունների օրը դարձել է 23 տարեկան։

Սովետական ընտրական սիստեմը քաղաքացիներին լայն իրավունքներ է տալիս ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ։ Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների Կանոնադրությունը ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրելու իրավունք է ապահովում հասարակական կազմակերպություններին և աշխատավորների ընկերություններին։ Ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ կարող են առաջադրել կոմունիստական պարտիական կազմակերպությունները, պրոֆեսիոնալ միությունները, կոոպերատիվ կազմակերպությունները, երիտասարդության կազմակերպությունները, ինչպես նաև բանվորների ու ծառայողների ընդհանուր ժողովները՝ ըստ ձեռնարկությունների, հիմնարկությունների և սովխոզների, զինծառայողները՝ ըստ զորամասերի, և գյուղացիների ընդհանուր ժողովները՝ ըստ կոլխոզների ու գյուղերի։

Ժողովրդական դատարանների ընտրու-



թյուններին քաղաքացիների մասնակցությունն ապահովելու նկատմամբ սովետական պետության հսկայական հոգատարությունը արտացոլված է Կանոնադրության մեջ, որը տարբեր նորմաներ է նախատեսում ընտրական կետեր կազմակերպելու ժամանակ։ Կանոնադրության մեջ նախատեսվում է ընտրական կետեր կազմակերպել, որպես կանոն, 1500—3000 բնակչին մեկ ընտրական կետի հաշվով։ 500-ից մինչև 2000 բնակիչ ունեցող գյուղերում կազմակերպվում է առանձին ընտրական կետ։ Բայց եթե գյուղի հեռավորությունը ընտրական կետից անցնում է 10 կիլոմետրից, ընտրական կետ կարող է կազմակերպվել նաև մինչև 500 մարդ (բայց ոչ պակաս քան 300 մարդ) բնակչության առկայության դեպքում։ Այն վայրերում, որտեղ գերակշռում են փոքր բնակավայրերը, ինչպես նաև լեռնային շրջաններում և ձմեռանոցներում ընտրական կետեր կարող են կազմակերպվել բնակչության ավելի պակաս քանակի համար, բայց ոչ պակաս քան 50 մարդուց։

Ագիտատորները այս օրինակով կարող են ընտրողներին ակնառու կերպով ցույց տալ մեր ընտրական սիստեմի առավելությունները կապիտալիստական ամեն մի ընտրական

սիստեմի հանդեպ, որը բոլոր եղանակներով ձգտում է աշխատավորներին թույլ չտալ իրագործելու իրենց ընտրական իրավունքները։

Ժողովրդական դատարանների առաջիկա ընտրությունների կապակցությամբ պարտիական կազմակերպությունների և մեր ագիտատորների առաջ կանգնած են մեծ ու կարևոր խնդիրներ։ Պարտիական կազմակերպությունները պետք է գլխավորեն աշխատավորների քաղաքական ակտիվությունը՝ ժողովրդական դատարանների ընտրությունների օրը ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ, կոլխոզներում ու սովխոզներում արտադրական նորանոր հաղթանակներով դիմավորելու համար։

Ժողովրդական դատարանների ընտրությունների նախապատրաստման ժամանակաշրջանում լայն թափ պետք է ստանա բնակչության մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Դրա համար պետք է օգտագործել պարտիական կազմակերպությունների և լավագույն ագիտատորների հարուստ փորձը, որ նրանք կուտակել են աշխատավորների դեպուտատների Գերագույն և տեղական Սովետների ընտրությունների ժամանակ։

Անհրաժեշտ է, որ ագիտատորները աշխա-



տավորներին պարզաբանեն սովետական սոցիալիստական դեմոկրատիայի առավելությունը այսպես կոչված բուրժուական դեմոկրատիայի հանդեպ, բացատրեն սովետական դատարանի սկզբունքային տարբերությունը կապիտալիստական դատարանից։ Ագիտացիոն աշխատանքում հարկավոր է նաև մասսայականացնել սովետական դատարանի դերն ու նշանակությունը սովետական օրինականության ամրապնդման գործում, աշխատանքի սոցիալիստական կարգապահության ամրապնդման գործում։

Մեր ագիտատորները պետք է ընտրողներին ծանոթացնեն ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուների կենսագրության ու հասարակական-քաղաքական գործունեության հետ։

Ագիտատորները շրջանային և քաղաքային Սովետների գործկոմներին մեծ օգնություն կարող են ցույց տալ ընտրողների ցուցակները կազմելու և ստուգելու գործում։ Ագիտատորները հաճախ են շփվում ընտրողների հետ, ճանաչում են նրանց անձամբ, պարզաբանում են ժողովրդական դատարանների ընտրությունների կամպանիայի քաղաքական նշանակությունը։ Նրանք կարող են իրենց ընտրողներին հիշեցնել, թե անհրաժեշտ է

նախապես ստուգել իրենց ազգանունները ընտրական ցուցակներում, որպեսզի ժամանակին ուղղվեն հնարավոր սխալներն ու աղավաղումները։

Գերագույն և տեղական Սովետների ընտրությունների ժամանակ մեր ռեսպուբլիկայի աշխատավորները չտեսնված մեծ ակտիվություն ցույց տվին միահամուռ ներպով մասնակցելով ընտրություններին։ Անհրաժեշտ է, որ այդպես ակտիվորեն ու կազմակերպված կատարվեն Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունները։

Ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ ագիտացիոն-մասսայական աշխատանքը պետք է օգնի է՛լ ավելի բարձրացնելու աշխատավորների արտադրական ու քաղաքական ակտիվությունը, այն պետք է ծառայի սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության և կոմունիստների ու անկուսակցականների ստալինյան բլոկի հետագա ամրապնդման գործին։

Խ. ԽԱՇԽԱՅԱՆ

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՑՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

## ԲԵԼՈՌՈՒՍԱԿԱՆ ՍՍՌ-Ի 30-ԱՄՅԱԿԸ

### (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

1949 թվի հունվարի 1-ին լրանում է եղբայրական Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի կազմակերպման 30 տարին։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի հաղթանակի շնորհիվ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ բելոռուս ժողովուրդն իր բազմադարյան պատմության մեջ առաջին անգամ ձեռք բերեց իր պետականությունը, ստացավ ազատություն։ Բելոռուսական ՍՍՌ-ի կազմումը հանդիսացավ բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության ամենացայտուն արտահայտություններից մեկը։

Իմպերիալիստական առաջին պատերազմի չորս և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի երեք տարիների ընթացքում ամբողջովին քայքայվել էր Բելոռուսիայի արդյունաբերությունը, տրանսպորտը և գյուղա-

տընտեսությունը։ Բելոռուս ժողովրդի անձնվեր աշխատանքով 1925 թվի վերջում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնումը հիմնականում ավարտված էր, իսկ 1925—1926 թ. թ. գերազանցված էր արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի մինչպատերազմյան մակարդակը։

Սովետական Միության ժողովուրդների ստալինյան ընտանիքում, երկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի և գյուղատընտեսության կոլեկտիվացման շնորհիվ Բելոռուսիան անցյալում ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասից վերածվեց ծաղկող ինդուստրիալ-կոլխոզային սոցիալիստական ռեսպուբլիկայի։

Ստալինյան հնգամյակների տարիներին ռեսպուբլիկայում առաջավոր տեխնիկայի բազայի վրա հիմնված ստեղծվեց սեփական խոշոր՝ էներգետիկական, վառելիքային, մետաղամշակման, դազգահաշինական, մեքենաշինական, քիմիական, փայտամշակման արդյունաբերություն, թեթև և սննդի արդյունաբերության բազմազան ճյուղեր։

Խոշոր արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվին՝ 1913 թվականի համեմատությամբ աճեց 23 անգամ։ Նույն



այդ ժամանակամիջոցում էլեկտրակայանների կարողությունն աճեց ավելի քան 100 անգամ, մետաղամշակման արդյունաբերությունը՝ 58 անգամ, քիմիական արդյունաբերությունը՝ 41 անգամ, տորֆի հանույթի ծավալը՝ 226 անգամ։

Կոլխոզային կարգի հաղթանակը չտեսնըված ծաղկման հասցրեց ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը։ Նախկինում մանր ու ցիրուցան անհատական գյուղացիական տնտեսությունների փոխարեն 1940 թվին կար ավելի քան 10.000 կոլխոզ։ Այդ նույն թվին Բելոռուսիայում գոյություն ուներ 337 ՄՏ կայան, կոլխոզային դաշտերում աշխատում էին մոտ 10.000 տրակտոր։ 1913 թվի համեմատությամբ 1940 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը աճեց ավելի քան 5 անգամ, տեխնիկական կուլտուրաներինը՝ 2,6 անգամ և այլն։

Բելոռուս ժողովուրդը հսկայական հաջողությունների հասավ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ստեղծման ու զարգացման գործում, իրագործեց կուլտուրական ռևոլուցիան։ Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին ռեսպուբլիկայում հաշվվում էր ավելի քան

11,500 դպրոց՝ 1.800.000 սովորողներով։ Նախասովետական ժամանակաշրջանի համեմատությամբ տարրական դպրոցների թիվըն ավելացել էր ավելի քան 2 անգամ, միջնակարգ դպրոցներինը՝ 17 անգամ, սովորողների թիվը՝ 6,6 անգամ, ուսուցիչներինը՝ 7,8 անգամ։

Սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար Սովետական Միության կառավարությունը 1935 թվին Բելոռուսական ՍՍՌ պարգևատրեց Լենինի շքանշանով։

***

ՍՍՌՄ-ի, ինչպես նաև Սովետական Բելոռուսիայի հաղթական զարգացմանը խանգարեց մեր Հայրենիքի վրա ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը։ Բոլշևիկների պարտիայի, ընկեր Ստալինի կոչով Սովետական Միության ժողովուրդների հետ միասին բելոռուս ժողովուրդը սրբազան, ազատագրական պատերազմի դուրս եկավ ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների։

Հայրենական Մեծ պատերազմում բելոռուս ժողովրդի ավելի քան 300.000 զավակներ ու դուստրեր անձնվիրաբար կռվում էին պարտիզանական ջոկատներում ընդդեմ ֆաշիստական զավթիչների։ Անմահ փառքով



իրենց պսակեցին Հայրենական պատերազմի և պարտիզանական շարժման լեգենդար հերոսները, բելոռուս ժողովրդի լավագույն զավակներն ու դուստրերը՝ գեներալ Դովատորը, կապիտան Գաստելլոն, Վիկտոր Տալալիխինը, Յուրոսեյ Սմոլյաչկովը, Կոնստանտին Զասլոնովը և ուրիշները։ Արիության և հերոսության համար սովետական կառավարությունը 80.000 պարտիզանների պարգևատրեց Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ 70 պարտիզանների շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում։

Օկուպացիայի երեք տարիների ընթացքում Բելոռուսիան ենթարկվել էր լիակատար քայքայման ու ավերածության։ Գերմանական ֆաշիստները գյուղում այրեցին 1 միլիոն 200 հազար շենքեր։ Գյուղում և քաղաքում անօթևան մնացին 3 միլիոն մարդ։ Այրվել ու ոչնչացվել էր ավելի քան 7000 դպրոց, գրադարան, կուլտուրայի տուն, հիվանդանոց, կլինիկա, թատրոն, թանգարան, Գիտությունների Ակադեմիայի, Բուհ-երի շենքերը և այլն։

Ցանքսերի տարածությունը կրճատվեց 40 տոկոսով։ Ոչնչացվեց կոլխոզների հանրային անասնապահությունը, քայքայվեցին կոլ-

խոզները։ Արդյունաբերական ձեռնարկությունների ճնշող մասը և բոլոր էլեկտրակայանները ոչնչացված էր։

***

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո բելոռուս ժողովուրդը ձեռնամուխ եղավ շինարարական աշխատանքի, գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից երկրին հասցված ծանր վերքերի բուժման, տնտեսության հետագա զարգացման գործին։ Արդեն վերականգնվել ու շահագործման են հանձնվել բազմաթիվ էլեկտրակայաններ, արդյունաբերական ձեռնարկություններ։ Կառուցվում են ավտոմոբիլների, տրակտորների, հեծանիվի և բազմաթիվ այլ նոր գործարաններ։ Երեք տարվա ընթացքում ռեսպուբլիկան ստացել է 50.000 միավոր արդյունաբերական սարքավորումներ, հազարավոր տրակտորներ, 15.000 գյուղատնտեսական մեքենաներ, 128.000 ձի, 150.000 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ, միլիոնավոր փթերով սերմացու։

Հնգամյա պլանով արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1950 թվի վերջին գերազանցելու է մինչպատերազմյան մակարդակը։ Արդեն 1948 թվին կոլխոզների ցանքատարածությունները հա-



սել են մինչպատերազմյան մակարդակի 91,4 տոկոսին, իսկ հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հասել է այդ մակարդակին։ Ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը 1948 թվին ժամկետից շուտ կատարեց հացամթերումների պլանը և 4 միլիոն փութ ավելի հաց տվեց հարազատ պետությանը։ Արդյունաբերության և տրանսպորտի աշխատողները խոսք են տվել և պայքարում են մինչև 1948 թվի վերջը տալ 254 միլիոն 700 հազար ռուբլու արտապլանային կուտակում։

Անցած չորս տարում հսկայական աշխատանք է կատարված քաղաքների ու գյուղերի վերականգնման, բարեկարգման ուղղությամբ։ Լիովին վերականգնված է մինչպատերազմյան դպրոցական ցանցը։ Վերականգնվել ու կառուցվել են 7000 դպրոցական շենքեր։

1947—48 ուս-տարում ռեսպուբլիկայում կար 11.678 դպրոց՝ 1,5 միլիոն սովորողներով, 50.000 ուսուցիչ։ Գործում են 27 բուհեր և 110 միջնակարգ-մասնագիտական դպրոցներ։ Ռեսպուբլիկայում հրատարակվում է 6 ժուռնալ, 9 ռեսպուբլիկական, 11 մարզային, 172 շրջանային և քաղաքային թերթեր։

## ՆՈՐ ՍԱՐՔԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՆ ԼՐԻՎ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ԵՎ ԹՈՂԱՐԿՎՈՂ ԱՍՈՐՏԻՄԵՆՏԻ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՀԱՄԱՐ

*Ջեթ-օճառ կոմբինատի ագիտկոլեկտիվի հերթական սեմինար պարապմունքն է։ Սեմինարի են եկել զգալի թվով ագիտատորներ։ Դրանք ինժեներներ, տեխնիկներ, վարպետներ, կոմբինատի առաջավոր մարդիկ են, որոնք իրենց ուժն ու գիտելիքները չեն խնայում բանվորներին մոբիլիզացնելու, անխոնջ կերպով ծառայում են նրանց քաղաքական լուսավորության գործին, խնդիր ունենալով կոմբինատի առջև դրված հարցերը պատվով կատարել։*

*Սեմինար պարապմունքը ղեկավարում է ագիտկոլեկտիվի ղեկավար ընկ. Նվարդ Աղատյանը։ Այդ օրվա սեմինարի թեման էր նոր սարքավորումների յուրացման և թողարկվող արտադրանքի ասորտիմենտի հարցը։ Ընկ. Աղատյանը այդ հարցը նախապատրաստել էր խնամքով, նախօրոք խոսելով ա-*



*գիտատորների և պարտկազմակերպության քարտուղարի հետ։ Բացի դրանից, առաջավոր բանվորների հետ ունեցած հարց ու փորձը ցույց էր տվել, որ այդ թեման շատ է հետաքրքրում բանվորներին, հետևապես այն հրատապ հարց էր դարձել ագիտացիայի համար։*

*Խոսելով կոմբինատում նոր ստեղծված սարքավորումների և արտադրության բարձրացման գործում նրա հսկայական նշանակության մասին, ագիտկոլեկտիվի ղեկավարը նշում է.*

*— Հետպատերազմյան ստալինյան հնգամյակում, հատկապես այս տարի մեր կոմբինատը տեխնիկական լուրջ վերակառուցման է ենթարկվել։ Հնացած շատ սարքավորումներ փոխարինվել են նոր, ավելի կատարելագործված սարքավորումներով։*

*Ինչպես ձեզ հայտնի է Ջեթի գործարանի մամլիչները, որոնք դրված էին 1924 թվին, այժմ փոխարինվել են նոր, ժամանակակից մամլիչներով, հունդի տնտեսության մեջ դրոված են նոր կոնվեյերներ։ Այսպիսով Ջեթի գործարանը ամբողջովին վերակառուցման է ենթարկվել։ Գլիցերինի ցեխում դրվելու են նոր «վակում» ապարատներ, տեխնիկական նորամուծություններ են ստեղծվում ռաֆի-*

նաղի ցեխում։ Նոր սարքավորումներ են դըրվում Օճառի և Հիդրոգենիզացիոն գործարաններում։ Միաժամանակ հայտնեմ, որ Կոմբինատում կառուցվելու է Մարգարինի գործարան, իսկ դա պահանջում է Հիդրոգենիզացիոն գործարանի տեխնոլոգիական պրոցեսները հարմարացնել նաև սննդի ճարպայուղ արտադրելու։

Ելնելով նրանց կարողությունից և երկրին լրացուցիչ արտապլանային կոստակումներ տալու բանվորների բուռն ցանկությունից, մենք պարտավորվել ենք տալ 8000 տոննա օճառ, 6000 տոննա ձեթ, 6000 տոննա ճարպայուղ։ Եթե մենք կարողանանք այդ խնդիրները պատվով կատարել, ապա մենք մեր հնգամյա պլանը կատարած կլինենք 4 տարում։

Ագիտատորները համապատասխան նշումներ են կատարում իրենց մոտ։ Փաստերը հետաքրքիր են, իսկ տվյալները կարևոր։

ՀԿ(բ)Պ 14-րդ համագումարում Կենտկոմի քարտուղար ընկ. Գր. Հարությունյանը իր հաշվետու զեկուցման մեջ նշեց նաև արտադրական ձեռնարկություններում մտցված նոր կատարելագործված սարքավորումները իրենց լրիվ կարողությամբ և բեռնվածությամբ օգտագործելու անհրաժեշտության



մասին։ Համագումարը իր ընդունած բանաձևի մեջ պարտավորեցրեց արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպություններին և տնտեսական ղեկավարներին՝ «...ամեն կերպ բարձրացնել արտադրության տեխնիկական կուլտուրան, արմատավորել նորագույն սարքավորումը, ապահովել հետագա մեքենայացումը և կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, ինչպես նաև ապահովել աշխատանքի արտադրողականության անշեղ աճը և թողարկվող արտադրանքի որակի բարելավումը»։

Համագումարի այս որոշման ոգով մենք պետք է վերակառուցենք մեր ագիտացիոն-մասսայական աշխատանքները։

Մյուս կարևոր հարցը դա արտադրության ասորտիմենտի պահպանման հարցն է, որը պետական խոշոր նշանակություն ունի։ Ճիշտ է, այս տարի տարեկան պլանը ասորտիմենտի դծով կատարել ենք, սակայն առանձին ամիսների ընթացքում ասորտիմենտը խախտվել է։

— Ի՞նչ կարող են անել ագիտատորները ասորտիմենտի խախտման դեպքում, շարունակում է ընկ. Աղատյանը, դրա համար հարկավոր է պայքար կազմակերպել ասորտիմենտի խախտումների դեմ, ամենից առաջ

ահազանգել այդ մասին դիրեկցիային, որպեսզի նա կոնկրետ միջոցներ ձեռք առնի։ Միաժամանակ բացատրել բանվորներին, որ առանց ասորտիմենտի պահպանման, միայն պլանի համախառն արտադրանքի կատարումը, դեռևս պետական առաջադրանքի կատարում չի նշանակում։

Խոսում են իրենք, ագիտատորները։ Մարտին Սուղջյանը (Ջեթի գործարանի հերթապահ ինժեներ) նշում է, որ Ջեթի գործարանում ևս խախտվել է ասորտիմենտը։ Մենք, ագիտատորներս պետք է բացատրենք բանվորներին դրա վնասակարությունը։ Այսօրվա սեմինար պարապմունքից հետո, ես իմ ունկնդիրներին պետք է պատմեմ մեր գործարանի վերակառուցման և նոր սարքավորումների կարողության լրիվ օգտագործման արդյունքների մասին, այն մասին, որ վերակառուցման հետևանքով մեր գործարանը տալու է 3 տոկոս յուղի խնայողություն, 30 տոկոս արտադրողականության բարձրացում, 40—45 տոկոս բանվորական ուժի կրճատում։

Մուրադ Գևորգյանը (Օճառի գործարանի գլխավոր վարպետ), խոսում է այն մասին, որ գործարանում հաջող կազմակերպված ագիտացիայի միջոցով վերացվել են մի շարք թերություններ։ Ես, ասում է նա, այստեղ



կբերեմ միայն մեկ օրինակ։ Ինչպես ձեզ հայտնի է մեր ձեռքի օճառների փաթաթման կուլտուրան շատ ցածր էր, առանձնապես չէր փայլում նաև որակը, մեր կատարած բացատրական-մասսայական աշխատանքի շնորհիվ, այժմ մեր օճառները համարվում են լավագույն օճառներից՝ իրենց թե որակով և թե արտաքին տեսքով։

Սեդա Հովհաննիսյանը (Հիդրոգենիզացիոն գործարանի ինժեներ) խոսելով նոր սարքավորումների լրիվ կարողությամբ օգտագործելու մասին, միաժամանակ այն կապում է կոմբինատում կատարվող ռացիոնալիզատորական առաջարկությունների և գյուտարարական աշխատանքների հետ։ Նա օրինակ է բերում կոմբինատում մեծ անուն հանած ռացիոնալիզատոր Սիմոն Հունանյանին, որը իր լավագույն առաջարկություններն կենսագործումով գործարանին մոտ 350 հազար ռուբլու օգուտ է տվել։

Մենք պետք է մեր ամենօրյա ագիտացիայի ընթացքում վեր հանենք մեր առաջավոր մարդկանց դրական աշխատանքը, մասսայականացնենք և բոլոր բանվորներին հասցնենք նրանց ուսանելի փորձերը։

Ագիտատոր Սիմոն Ասլանյանը պատմում է թե ինչպես առաջ արտադրած ձեռքի օճառի

մի օրվա գույնը նման չէր լինում մյուս օրվա տված գույնին, այդ նրանից էր, որ այդ աշխատանքը կատարող բանվորուհին գույնը օճառի մասսայի մեջ լցնում էր մոտավորապես, աչքի չափով։ Մենք ագիտացիայի ժամանակ նշեցինք այդ թերությունը, հարցը հասավ գործարանի ղեկավարությանը, սահմանվեց կայուն չափ և այդ գործը կարգավորվեց։

Ագիտատոր Համայակ Ղազարյանը հարց է դնում, որպեսզի ագիտկոլեկտիվի ղեկավարը և պարտկազմակերպությունը մտահոգվեն ագիտատորներին անհրաժեշտ գրականություն մատակարարելու մասին։ Ես,— ասում է նա,— մեծ թերություն եմ համարում, որ մեր ագիտատորներից շատերը չեն ստանում ոչ «Ագիտատորի բլոկնոտ» և ոչ էլ ագիտատորի գրադարանի սերիայով լույս տեսնող հետաքրքիր բրոշյուրները, որոնք մեզ շատ բան կտան մեր ագիտացիոն աշխատանքի համար։

Սեմինարիային մասնակցողների զրույցներից, հարց ու պատասխանից հետո, երբ բոլոր հարցերը պարզաբանվում են, ագիտկոլեկտիվի ղեկավարը համառոտակի ամփոփում է այդ օրվա պարապմունքի նյութը և դրանով ավարտվում է կազմակերպված սեմինարիան։

Վ. ԲՋՆՈՒՆԻ

*ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ*

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

1. Ստալինյան Կոնստիտուցիան որպես ՍՍՌՄ-ի հիմնական օրենք։ Ստալինյան Կոնստիտուցիան ամենադեմոկրատական կոնստիտուցիան է աշխարհում։ Ստալինյան Կոնստիտուցիայի հիմնական առանձնահատկությունները։ Ընկեր Ստալինը որպես հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիայի ստեղծող։

2. Սովետական Միությունը որպես բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն։ Աշխատավորների դեպուտատների Սովետները որպես ՍՍՌՄ քաղաքական հիմքը։ Տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը որպես ՍՍՌՄ տնտեսական հիմքը։

3. ՍՍՌՄ ընտրական օրենքը ամենադեմոկրատական օրենքն է աշխարհում։ Բուրժուական դեմոկրատիայի և սովետական դեմոկրատիայի արմատական տարբերությունը։ Սովետական ընտրական սիստեմը՝ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունք գաղտնի քվեարկությամբ։

4. ՍՍՌՄ քաղաքացիների հիմնական իրավունքները։ Աշխատանքի իրավունք, հանգստի իրավունք, ծերության և ժամանակավորապես աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովման իրավունք, կրթության իրավունք։ Կանանց և տղամարդկանց իրավահավասարությունը և այլն։

5. ՍՍՌՄ քաղաքացիների հիմնական պարտականությունը։ Սոցիալիստական սեփականությունը որպես սովետական կարգի սրբազան և անձեռնմխելի հիմք։ Ընդհանուր զինվորական պարտականությունն օրենք է հանդիսանում։ Սոցիալիստական հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտականությունն է։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Ի. Վ. Ստալին— «ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին» (զեկուցում Սովետների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարում— 1936 թ. նոյեմբերի 25-ին)։

2. Ի. Վ. Ստալին— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1937 թվի դեկտեմբերի 11-ին և 1946 թվի փետրվարի 9-ին։

3. ՍՍՌՄ Կոնստիտուցիան։

4. Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան։

5. ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթաց (էջ 467—482 Հայ. հրատ., 1946 թ.)։



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՈՐՊԵՍ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ

1. Սովետական դատարանի դերն ու նշանակությունը։ Սովետական դատարանի պայքարը սոցիալիստական սեփականության պաշտպանության և հետագա ամրապնդման համար։ Սովետական դատարանի արմատական տարբերությունը բուրժուական դատարանից։

2. Սովետական դատարանի դաստիարակչական դերը և նրա պայքարը սովետական պետության, ընտանիքի ու կոմունիստական բարոյականության ամրապնդման համար։

3. Ժողովրդական լայն մասսաների ակտիվ մասնակցությունը ժողովրդական դատարանների առաջիկա ընտրություններին, դատական օրգանների հետագա աշխատանքների բարելավման լավագույն երաշխիքն է։

4. Ժողովրդական դատարանների ընտրությունները անցկացնենք սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության հետագա ամրապնդման և սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման նշանաբանի տակ։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Ի. Վ. Ստալին— «Լենինիզմի հարցերը» (11-րդ հրատ. Երևան 1940 թ., էջ 481—647, 729—737)։

2. Մ. Ի. Կալինին — ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում (Հայպետհրատ, Երևան, 1939 թ.)։

3. ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիայի 9-րդ գլուխը՝ «Դատարան և դատախազություն»։

4. ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի Նախագահության 1947 թվի հունիսի 4-ի Հրամանագրերը։

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

1. Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների սիստեմը, ընտրողների ցուցակները։

2. Ժողովրդական դատարանների ընտրությունների ընտրական օկրուգները և ընտրական կետերը, ընտրությունների կազմակերպումը։

3. Ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուների առաջադրման կարգը։

4. Ժողովրդական դատարանների ընտրությունների քվեարկության կարգը, ընտրությունների արդյունքների որոշումը։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. Օրենք ՍՍՌՄ, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության մասին (Երևան, 1938 թ.)։

2. Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերը՝ «Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների օրվա մասին» և «Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունների Կանոնադրությունը հաստատելու մասին» («Ս. Հ.», 2—12 1948 թ., № 285)։

# 1948 ԹՎԻՆ ԱԳԻՏԱՏՈՐԻ «ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀԻՄՆԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿԸ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ









## ՀՈԴՎԱԾՆԵՐ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ









ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ



Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 05214 Պատվեր № 875 Տիրաժ 9.200
Ստորագրված է տպագրության 24/XII 1948 թ.
Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора

Գինը 50 կոպ.

# ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

## ԲԱՑՎԱԾ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի 1949 ԹՎԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և Փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկներում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**Տարեկան 24 համարը — 12 ռուբլի**
**6 ամիսը 12 „ — 6 „**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**